Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Նյութեր զրույցների համար

Էջ





Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ԱՆԽՈՐՏԱԿԵԼԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ

(Եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության արդյունքները)

1957 թվականի նոյեմբերին, Մոսկվայում տեղի ունեցած կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունները խոշոր դեր խաղացին միջազգային քաղաքական կյանքում:

Աշխարհի բոլոր ծայրերից հավաքված կոմունիստական և բանվորական պարտիաների այդ ներկայացուցիչները Մոսկվա էին եկել մասնակցելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի առթիվ կազմակերպված հոյակապ տոնահանդեսին: Նրանք ականատես եղան սովետական ժողովրդի 40 տարիների ընթացքում ձեռք բերած մեծագույն նվաճումների ցուցադրմանը, տեսան մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության, կուլտուրայի, արվեստի ու գրականության ան-





նախընթաց զարգացումը, մեր մեծ Հայրենիքի ուժն ու հզորությունը։

Այդ բոլորից հետո նրանք ցանկություն հայտնեցին սովետական երկրում իրենց գտնվելը միաժամանակ օգտագործել բարեկամական հանդիպումների համար, որի ընթացքում քննարկեցին մի շարք կարևոր հարցեր։

Ընդառաջ գնալով այդ ցանկությանը, ՍՄԿՊ-ի Կենտկոմը ստանձնեց այդպիսի խորհրդակցություն կազմակերպելու նախաձեռնությունը։ Համաշխարհային կոմունիստական շարժման պատմությունը դեռևս չգիտե ներկայացուցիչների այդպիսի լայն մասշտաբի հանդիպում, քան Մոսկվայում տեղի ունեցած այս խորհրդակցությունները։

Առաջին խորհրդակցությանը մասնակցեցին սոցիալիստական երկրների պարտիաների ղեկավար ներկայացուցիչները, իսկ երկրորդ խորհրդակցությանը մասնակցեցին ավելի քան 60 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչները։ Խորհրդակցությանը ներկայացված էին 26 պարտիա եվրոպական երկրներից, 15 պարտիա ասիական երկրներից, 18 պարտիա ամերիկյան երկրներից, 3 պար-



տիա աֆրիկյան երկրներից և 2 պարտիա ավստրալիական երկրներից։

Վերջին շրջանում համաշխարհային կոմունիստական շարժումը լայն ծավալ է ստացել երկրագնդի բոլոր երկրներում, նա աճել, ամրապնդվել և հզոր ուժի է վերածվել։ Ներկայումս ամբողջ աշխարհում կոմունիստական պարտիաների անդամների թիվը հասնում է 33 միլիոնի։ Մինչդեռ 2-րդ համաշխարհային պատերազմի նախօրյակին կոմունիստական պարտիաներ գոյություն ունեին 43 երկրներում, իսկ անդամների թիվը 4 միլիոն 200 հազարից չէր անցնում։

Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցությանը մասնակցում էին բանվորական շարժման և Կոմունիստական պարտիաների այնպիսի նշանավոր գործիչներ, ինչպիսիք են ընկերներ Մաո Ցզե-դունը, Ժակ Դյուկլոն, Պալմիրո Տոլյատտին, Դոլորես Իբարրուրին, Հո Շի Մինը, Վալտեր Ուլբրիխտը, Վլադիսլավ Գոմուլկան, Անտոն Յուգով, Մաքս Ռեյմանը, Յոհան Կոպլենիգը, Վիկտորիո Կոդովիլյան և շատ ուրիշներ։

Խորհրդակցություններում միահամուռ կերպով մշակվեցին խոշոր կարևորություն ունեցող երկու փաստաթուղթ՝ Դեկլարա-

ցիան, որն ընդունվել է սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների կողմից և Խաղաղության Մանիֆեստը, որն ընդունվել է 64 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների կողմից։ Այդ երկու կարևոր փաստաթղթերն էլ ինչպես հրապարակումից անմիջապես հետո, այնպես էլ այժմ գտնըվում են ամբողջ աշխարհի ժողովուրդների ուշադրության կենտրոնում։ Ամբողջ աշխարհի բարի կամքի միլիոնավոր մարդիկ ուսումնասիրում են այդ կարևոր փաստաթղթերը, ծանոթանում դրանց հետ և միահամուռ կերպով պաշտպանում նրանցում առաջ քաշված բոլոր սկզբունքներն ու դրույթները։

Դեկլարացիայի մեջ թեորիապես ընդհանրացված է համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման փորձը, ինչպես նաև ազգային-ազատագրական շարժման փորձը գաղութներում և կախյալ երկրներում, տրված է ներկա միջազգային դրության մարքսիստական-լենինյան խորը և գիտական վերլուծությունը և նշված են կոմունիստական ու բանվորական պարտիաների խնդիրները։



Մեծագույն, պատմական նշանակություն ունեցող այդ փաստաթղթերում այն հաստատ համոզմունքն է արտահայտված, որ հասարակության սոցիալիստական սիստեմը, որը գնալով ծավալվում և ամրապնդվում է, անպարտելի է, որ նա աշխատավոր մարդկության միակ հույսն ու փրկությունն է շահագործական բոլոր ձևերից ազատագրվելու համար։ Սոցիալիզմը, որը քառասուն տարի առաջ սկսեց իր գոյությունը մեկ երկրում, որպես հասարակական-տնտեսական նոր սիստեմ, ներկայումս վերածվել է համաշխարհային սիստեմի, որի մեջ ներգրավված է 950 միլիոն մարդ, այսինքն երկրագնդի բնակչության մեկ երրորդից ավելին։

Եղբայրական կոմպարտիաների ներկայացուցիչների կողմից ընդունված Դեկլարացիան և Խաղաղության Մանիֆեստը որպես առաջնահերթ խնդիր համարում են խաղաղության պաշտպանությունը և պատերազմների կանխումը։ Այդ փաստաթղթերում մանրամասնորեն բնութագրված են ամբողջ աշխարհի խաղաղության և ագրեսիվ ուժերի փոխհարաբերակցությունը և համոզիչ կերպով ցույց է տրված, որ խա-

ղաղության ուժերը գերազանցում են պատերազմ հրահրողների ուժերին։

Խաղաղության Մանիֆեստում հստակ կերպով շարադրված է կոմունիստական պարտիաների դիրքը խաղաղության պաշտպանության հարցի նկատմամբ։ Մանիֆեստը խնդիր է դնում լայն բացատրական-մասսայական աշխատանք կատարել աշխատավոր մասսաների մեջ, մոբիլիզացնել նրանց ողջ ուժերը ընդդեմ պատերազմի վտանգի և մերկացնել միջազգային բուրժուազիայի զրպարտիչ պրոպագանդան։ Մանիֆեստի կրակոտ խոսքերն ուղղված են աշխարհի բարի կամքի բոլոր մարդկանց՝ ընդհանուր ուժերով պայքարի ելնել սպառազինությունների, պատերազմ հրահրողների դեմ։

Վերջին տասնամյակի ընթացքում, առանձնապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, խոշոր փոփոխություններ տեղի ունեցան կապիտալիստական սիստեմի և սոցիալիստական սիստեմի միջև։ Առաջինը գնալով թուլանում ու քայքայվում է, իսկ երկրորդը ընդհակառակը, ավելի ընդարձակվում և հզորանում է։ Չինաստանի, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Կորեական Ժողո-



վրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովուրդներից բացի, Ասիայի և Աֆրիկայի երկրներից ավելի քան 700 միլիոն մարդ փշրեցին գաղութային շղթաները և ազգային ինքնուրույն պետություններ դարձան։ Սակայն դեռևս 160 միլիոն մարդ համառ պայքար են մղում կապիտալիզմի լծից ազատագրվելու համար։

ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները, որոնք դարձել են համաշխարհային ռեակցիայի կենտրոնը, ձգտում են մարդկությանը ետ պահել առաջադիմության, ազատության և խաղաղության համար մղվող պայքարից, մարդկությանը սարսափեցնելու համար շարունակում են սառը պատերազմի քաղաքականությունը և սպառազինությունների մրցավազքը։ Սակայն, ինչպես էլ գործեն նրանք, այնուամենայնիվ դատապարտված են կործանման։ Մարդկությունը հավատում է սոցիալիզմի հաղթանակին։

Սոցիալիզմի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունը լուրջ ուշադրություն դարձրեց նաև, սոցիալիստական պետությունների փոխհարաբերության հարցին։ Խորհրդակցության մասնակիցնե-

րը կրկին անգամ հաստատեցին իրենց հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին։ «Բոլոր կոմունիստական և բանվորական պարտիաների և համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների փոխհարաբերությունների հիմքը,— ասված է Դեկլարացիայի մեջ,— կազմում են կյանքում ստուգված մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները»։

Խորհրդակցության մասնակիցները միահամուռ կերպով ընդգծեցին Սովետական Միության ղեկավար դերը, և անհրաժեշտ համարեցին բոլոր միջոցներով օգնել ու պաշտպանել ՍՍՌՄ-ին՝ աշխարհի ամենահզոր Սոցիալիստական պետությանը։

Խորհրդակցությունը հաստատեց կոմունիստական և բանվորական պարտիաների հայացքների միասնությունը սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության արմատական հարցերում։

Միաժամանակ խնդիր դրվեց ուժեղացնել պայքարը բանվորական և կոմունիստական շարժման մեջ օպորտունիստական հոսանքների դեմ, վճռականորեն հաղթահարել ռեվիզիոնիզմը և դոգմատիզմը մի շարք եղ-



բայրական պարտիաներում։ Խորհրդակցությունների մասնակիցները կրկին անգամ խնդիր դրեցին ուժեղացնել իրենց անխորտակելի միասնությունն ու համախմբվածությունը ընդդեմ իմպերիալիզմի և ռեակցիայի, հանուն կայուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

Մեր երկրի միլիոնավոր աշխատավորներ մեծ գոհունակությամբ ընդունեցին եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության պատմական նշանակություն ունեցող փաստաթղթերը։ Նրանք նոր պարտավորություններ ստանձնեցին սոցիալիստական Հայրենիքի տնտեսական հզորությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 35 ՏԱՐԻՆ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

*1957 թվականի դեկտեմբերի 30-ին լրանում է 35 տարին այն օրից, երբ կազմավորվեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։*

*Մինչև ՍՍՌՄ-ի կազմավորումը Սովետական ռեսպուբլիկաների փոխհարաբերությունները կառուցվում էին՝ պայմանագրային սկզբունքների հիման վրա։ Սոցիալիզմ կառուցելու համար բոլոր ժողովրդական ուժերի միավորման, երկրի ամուր պաշտպանությունը կազմակերպելու, մեր Հայրենիքի բոլոր ազգությունների բազմակողմանի զարգացումն ապահովելու անհրաժեշտությունը հասցրեց միասնական միութենական պետության՝ ՍՍՌ Միության ստեղծմանը։*

*Սովետական միութենական պետությունը ստեղծվեց իրավահավասար սոցիալիստական ազգերի կամավոր համագործակցու-*



*թյան լենինյան մեծ սկզբունքների հիման վրա։ Դեռ քաղաքացիական պատերազմի տարիներին մեծ Լենինը գրում էր , որ մենք ցանկանում ենք ազգերի կամավոր միություն, որը թույլ չտար մի ազգի բռնությունը մյուսի վրա, որը հիմնված լիներ լիակատար վստահության, եղբայրական միասնության պարզ գիտակցության, լրիվ կամավոր համաձայնության վրա։*

*ՍՍՌՄ-ի ստեղծման սկիզբը դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։ Առաջին հինգ տարիները՝ 1917 թվականից մինչև 1922 թվականը, հանդիսացան նախկին ցարական Ռուսաստանի տերիտորիայում Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների ստեղծման, ՍՍՌ Միության կազմավորման նախապատրաստության տարիներ։*

*Այդ տարիներին լայնորեն ծավալվեց միավորման շարժումը։ Միասնական միութենական պետության մեջ անկախ Սովետական Ռեսպուբլիկաների միավորման հարցը քննարկվեց աշխատավորների ժողովներում, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի Սովետների համագումարներում։ Ամենուրեք միահամուռ որոշումներ էին ընդունվում*

Ռուսաստանի ֆեդերացիայի հետ Միութենական Սովետական պետության մեջ միավորվելու մասին, ընտրվում էին Սովետների Համամիութենական համագումարի պատգամավորներ։

1922 թվականի դեկտեմբերի 30-ին Մոսկվայում, հանդիսավոր պայմաններում բացվեց Սովետների Համամիութենական առաջին համագումարը, որը մեծ ոգևորությամբ միահամուռ որոշում ընդունեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ Սովետական Ռեսպուբլիկաների կամավոր պետական միավորման մասին։

1922 թվականին ՍՍՌՄ-ի կազմի մեջ մտան Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկան, (ՌՍՖՍՌ), Ուկրաինական ՍՍՌ-ն, Բելոռուսական ՍՍՌ-ն և Անդրկովկասի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկան (նրա մեջ մտնում էին Հայաստանը, Վրաստանը և Ադրբեջանը)։

Այսպես, սրանից 35 տարի առաջ, ժողովուրդների կամքով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կազմավորվեց նոր, աշխարհում առաջին բազմազգ Սովետական Սոցիալիստական պետությունը՝ ՍՍՌՄ-ը։



Հետագայում, Սովետական պետության զարգացման ընթացքում ՍՍՌՄ-ի համեբաշխ ընտանիքը լրացավ նոր միութենական ռեսպուբլիկաներով։

1924 թվականին կազմավորվեցին Միջին Ասիայի ինքնուրույն միութենական ռեսպուբլիկաները՝ Ուզբեկական և Թուրքմենական, իսկ 1929 թվականին՝ Տաջիկական Սովետական Ռեսպուբլիկան։ 1936 թվականին ՍՍՌՄ կազմի մեջ մտան Ղազախստանի և Կիրգիզիայի ինքնուրույն միութենական ռեսպուբլիկաները։ Վրացական, Հայկական և Ադրբեջանական ռեսպուբլիկաները, որոնք մտնում էին Անդրկովկասյան Ֆեդերացիայի մեջ, իր պատմական դերն արդեն կատարած ֆեդերացիայի վերացումից հետո, անմիջականորեն մտան ՍՍՌՄ-ի կազմի մեջ, որպես միութենական ռեսպուբլիկաներ։

Այսպիսով, 1936 թվականի ՍՍՌՄ Կոնստիտուցիայի համաձայն ՍՍՌՄ-ի կազմում եղան 11 միութենական ռեսպուբլիկաներ։

ՍՍՌ Միությունն՝ որպես ֆեդերատիվ պետություն, զարգացման մեջ նշանավոր տարի դարձավ 1940 թվականը, երբ մեր Միության մեջ մտան Լիտվական, Լատվիական, Էստոնական ռեսպուբլիկաները, կազմա-

վորվեցին Մոլդավական ՍՍՌ-ն և Կարելո-Ֆիննական ՍՍՌ-ն։ Հետագայում Կարելո-Ֆիննական ՍՍՌ-ն ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի 5-րդ Սեսիայի որոշմամբ (1956 թվականի հուլիս) վերածվեց Կարելական ԱՍՍՌ-ի և մտցվեց ՌՍՖՍՌ-ի կազմի մեջ։

Ներկայումս ՍՍՌՄ-ի կազմում կան 15 միութենական ռեսպուբլիկաներ, 17 ավտոնոմ ռեսպուբլիկաներ, 9 ավտոնոմ մարզեր և 10 ազգային օկրուգներ։

ՍՍՌՄ-իստեղծումը լայն հեռանկարներ բացեց մեր երկրի ժողովուրդների պետականության, ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման համար։ Մեծ ու բազմակողմանի են սովետական բազմազգ պետության կազմավորման արդյունքները, բայց դրանցից ամենագլխավորը՝ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործումն է, մեկ երկրի սահմաններից սոցիալիզմի դուրս գալը, նրա վերածվելը համաշխարհային սիստեմի։

Սովետական հնգամյակները արմատապես փոխեցին և շարունակում են փոխել մեր Հայրենիքի դեմքը։ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել սոցիալիստական արդյունաբերության զարգացման բնագավառում։ Բավական է ասել, որ 1957 թվա-



կանին ՍՍՌՄ-ի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թըվականի համեմատությամբ, աճեց 33 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 74 անգամ։

Արդյունաբերության, ամենից առաջ, ծանր ինդուստրիայի հզոր զարգացումը հանդիսացավ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման բանալին։

Կոլտնտեսային կարգի հաղթանակը ՍՍՌՄ-ին դարձրեց աշխարհում ամենամեծ հողագործության երկիրը։ Սոցիալիստական գյուղատնտեսությունն ունի հզոր նյութատեխնիկական բազա։ Կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում են 1 միլիոն 632 հազար տրակտոր (15-ուժանոցի վերածած), 420 հազար հացահատիկային կոմբայն, մոտ 660 հազար բեռնատար ավտոմոբիլ և այլն։

ՍՍՌՄ-ի ստեղծումը և լենինյան ազգային քաղաքականության կենսագործումը ապահովեցին կուլտուրական ռևոլյուցիայի հաղթանակը միութենական և ավտոնոմ բոլոր ռեսպուբլիկաներում։ Ժողովուրդների սերտ համագործակցության և եղբայրական փոխօգնության շնորհիվ մեր երկիրը մեծ հաջողությունների հասավ տեխնիկական

առաջադիմության, գիտության, գրականության և արվեստի ծաղկման բնագավառում։

Կոմունիստական պարտիայի ամենօրյա հոգատարության շնորհիվ սովետական գիտությունը աշխարհում դուրս է եկել առաջին տեղը։ Այդ մասին ցայտուն կերպով վկայում է այնպիսի աչքի ընկնող հաղթանակ գիտության առաջադիմության բնագավառում, ինչպես աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանի կառուցումը, հզոր միջմայրցամաքային բալիստիկ հրթիռի և երկրի արհեստական արբանյակների ստեղծումն ու արձակումը։

ՍՍՌ Միության հետ միասին բուռն թափով զարգացել են բոլոր միութենական ռեսպուբլիկաները։ Սոցիալիզմի հաջողությունների հիման վրա Սովետական կառավարությունը հասավ ժողովուրդների տնտեսական և կուլտուրական հետամնացության վերացմանը, որը ժառանգվել էր ցարական Ռուսաստանից և գոյություն ուներ մինչև ՍՍՌՄ-ի կազմավորումը։

Այդ բոլորի մեջ խոշոր դեր խաղաց ռուս մեծ ժողովուրդը, որը իր շուրջը համախմբեց երկրի բոլոր ժողովուրդներին և եղբայրաբար օգնեց ու օգնում է տնտեսա-



կան ու կուլտուրական շինարարության գործում։

Թե ինչպիսի խոշոր հաջողությունների են հասել կուլտուրական և տնտեսական շինարարության բնագավառում մեր երկրի ժողովուրդները, կարելի է ցույց տալ ցանկացած միութենական ռեսպուբլիկայի օրինակով։

Ինդուստրացման քաղաքականության կենսագործման հետևանքով Սովետական Ուկրաինան դարձել է առաջավոր ինդուստրիալ պետություն։ Մի շարք հիմնական տնտեսական ցուցանիշների գծով Ուկրաինական ՍՍՌ-ն մեծ չափով առաջ է անցել Եվրոպայի այնպիսի խոշոր կապիտալիստական երկրներից, ինչպես Ֆրանսիան և Իտալիան։

Բելոռուսիան մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան ցարական Ռուսաստանի հետամնաց ազգային ծայրամասերից մեկն էր։ Միայն ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ-ի մյուս բոլոր ժողովուրդների եղբայրական օգնության և համագործակցության շնորհիվ Սովետական Բելոռուսիան դարձավ առաջավոր սոցիալիստական ինդուստրիալ պետություն։

Ուկրաինան և Բելոռուսիան այժմ ՍՍՌՄ-ի հետ միասին որպես ինքնուրույն պետու-

թյուններ պաշտպանում են խաղաղության գործը միջազգային կոնֆերանսներում։ Նրանք հանդիսանում են Միավորված Ազգերի կազմակերպության անդամներ։

Հենվելով ռուս ժողովրդի եղբայրական օգնության և ամբողջ Սովետական Միության հզորության վրա իրենց ռեսպուբլիկաները վերափոխեցին Անդրկովկասի ժողովուրդները։ Վրաստանը, Հայաստանը և Ադրբեջանը Սովետական իշխանության տարիներին ցարական Ռուսաստանի հետամնաց և քայքայված ծայրամասից վերածվեցին բարձր զարգացած արդյունաբերության, գյուղատնտեսության և առաջավոր կուլտուրա ունեցող ծաղկուն սոցիալիստական ռեսպուբլիկաների։

Այդ քայլի առավելության վառ ապացույց կարող է ծառայել մեր ռեսպուբլիկայի օրինակը, որը պատմական կարճ ժամանակաշրջանում, ՍՍՌՄ-ի ժողովուրդների եղբայրական համագործակցության և փոխադարձ օգնության պայմաններում վիթխարի թռիչք կատարեց դեպի առաջ, հասավ իր էկոնոմիկայի և կուլտուրայի չտեսնված ծաղկմանը։

Ղազախստանի և Միջին Ասիայի՝ անցյալում տնտեսապես և կուլտուրապես հետա-



մնաց, գաղութային և ֆեոդալական լծի տակ տնքացող ժողովուրդները զարգացման սոցիալիստական ուղին անցնելու, ՍՍՌՄ-ի ժողովուրդների եղբայրական ընտանիքում միավորելու շնորհիվ իրենց ռեսպուբլիկաները զարգացրին խիստ արագ տեմպերով և դրանք վեր ածեցին ժամանակակից ինդուստրիայի և բարձր մեքենայացված սոցիալիստական գյուղատնտեսության երկրների։

Ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում վիթխարի հաջողությունների են հասել Մերձբալթիկայի և Մոլդավիայի երիտասարդ միութենական ռեսպուբլիկաները։

Կոմունիստական պարտիայի կողմից համախմբած և միավորած Սովետական երկրի ժողովուրդների համերաշխ ընտանիքը այժմ դարձել է մի պայծառ համաստեղություն, որը ժողովուրդների բարեկամության, եղբայրության, միասնության և իրավահավասարության իր վառ ճառագայթներով լուսավորում է ամբողջ աշխարհը։

---

# ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔՆ ԻՋԵՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Պ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀԿՊ Ստալինյան շրջկոմի քարտուղար

*Մեր երկրի արդյունաբերության աշխատողների առջև պարտիայի 20-րդ համագումարը լուրջ և պատասխանատու խնդիրներ դրեց՝ սիստեմատիկորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, կիրառել խնայողության խստագույն ռեժիմ, ներդնել տնտեսական հաշվարկումը բոլոր ձեռնարկություններում։*

*Երևանի Ստալինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում զգալի աշխատանք է կատարվել թողարկվող արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ։ Բավական է նշել, որ այս տարվա անցած 9 ամիսների ընթացքում արդյունաբերական ձեռնարկությունները արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ տնտեսել են մոտ 8 միլիոն ռուբլի։ Միայն 3-րդ եռամսյակի ընթացքում Կիրովի անվան գործարանի կոլեկ-*



*տիվը նախատեսված ինքնարժեքի իջեցման առաջադրանքը գերակատարելու շնորհիվ արտապլանային կուտակումներ ստեղծեց մոտ 800 հազար ռուբլու չափով։*

*Արտապլանային կուտակումները այդ նույն ժամանակաշրջանում Ծխախոտի ֆաբրիկայում կազմեց 1 միլիոն 853 հազար ռուբլի, Փոքր հիդրոտուրբինների գործարանում ավելի քան 700 հազար ռուբլի, Ռետինատեխնիկական իրերի գործարանում 1 միլիոն 400 հազար ռուբլի և այլն։*

*Արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում խոշոր աշխատանք են կատարում մեր շրջանի ագիտատորները։ Շրջանի շատ ձեռնարկություններում ագիտատորները սիստեմատիկաբար ունկնդիրների հետ զրույցներ են ունենում թողարկվող արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու, արտադրանքի որակը բարելավելու, հումքը, էլեկտրաէներգիան խնայելու և բազմաթիվ այլ հարցերի մասին։ Նրանք ունկնդիրներին, զրույցի ընթացքում հանգամանորեն պարզաբանում են այն ուղիները, որոնց միջոցով հնարավոր է թողարկել ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք և այդ ճանապարհով իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։*

*Անկախ նրանից, թե ձեռնարկությունն ինչ է արտադրում, գեներատոր թե տրանսֆոր-*

մատոր, ավտոդող թե կաբել, հաստոց թե կոմպրեսոր, կոշիկ թե մակարոն, բոլոր դեպքերում այդ նյութական արժեքներն ստեղծողները պետք է պարզ պատկերացում ունենան, թե նրանց մեկ միավորը ինչ արժեք ունի կամ միավորի ինքնարժեքը ծախսերի ինչպիսի էլեմենտներից է բաղկացած։

Արտադրողին հայտնի լինելով արտադրանքի մեկ միավորի վրա ընկնող ծախսերի էլեմենտները, այսինքն, ինքնարժեքի բաղկացուցիչ մասերը, նրա համար դժվար չէ փնտրելու ու գտնելու այն ուղիները, որոնք նպաստում են արտադրանքի ինքնարժեքն իջեցնելուն։ Այս հարցում է, որ մեր ագիտատորները պետք է օգնեն արտադրության անմիջական պրոցեսներում աշխատողներին։

Որոնք են, վերջապես, արտադրանքի մեկ միավորի փաստացի ծախսերը ըստ ինքնարժեքի էլեմենտների։ Այս ծախսերից հիմնականները պետք է համարել աշխատավարձը, հումքի արժեքը, վառելիքի և էլեկտրաէներգիայի արժեքը, ամորտիզացիոն ծախսերը, ադմինիստրատիվ վարչական ծախսերը և ուրիշ ծախսեր։

Մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների ագիտկոլեկտիվների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ երբ ագիտատորը արտադրության մեջ աշխատող



ունկնդիրներին ճիշտ է պարզաբանում արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները և գործնականում ցույց է տալիս, թե ինչպես պետք է խնայել հումքը, էլեկտրաէներգիան, արդյունավետ օգտագործել բանվորական օրը, այնտեղ հիանալի արդյունք է ստացվում։ Օրինակ, այս տարվա առաջին եռամսյակում թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը չէր կատարվում Երևանի Ավտոպահեստամասերի գործարանում։ Այստեղ առանձին դետալների ինքնարժեքը բավականին բարձր էր։ Մեծ քանակությամբ մետաղի և աշխատավարձի գերածախս գոյություն ուներ, աշխատանքի արտադրողականությունը ցածր էր, բացակայում էր նյութական արժեքների հաշվառումը, իսկ բանվորական օրը լրիվ չէր օգտագործվում։

Այս հարցին միջամտեց նաև Ստալինյան շրջանային կոմիտեի բյուրոն, որի որոշումից հետո գործարանի պարտիական կազմակերպությունը դիրեկցիայի հետ միասին մշակեցին մի շարք միջոցառումներ արտադրանքի ինքնարժեքի հետագա իջեցման նպատակով։ Թարմացվեց նաև ագիտկոլեկտիվը։ Այն համալրվեց ինժեներա-տեխնիկական աշխատողներով ու արտադրության առաջավորներով։

Ագիտկոլեկտիվի համար հիմնական խնդիր դարձավ ագիտատորներին սիստեմատիկ օգնություն ցույց տալու միջոցով, ավելի հետաքրքիր ու նպատակասլաց դարձնել արդյունաբերական թեմաների շուրջ կազմակերպվող զրույցները, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր բանվոր արտադրանքի ինքնարժեքի մասին հստակ պատկերացում ունենալու հետ միասին աշխատանքի ընթացքում պայքար մղի հումքի, օժանդակ նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի խնայողության, աշխատանքային օրվա լրիվ օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Օրերս գործարանի № 1 մեխանիկական ցեխի 2-րդ տեղամասի ագիտատոր Աբով Կարապետյանը իր առաջին զրույցներից մեկում շատ պատկերավոր բացատրում էր թե ինչ կտա գործարանում մեկ տոկոս մետաղի խնայողությունը։ Երբ ունկնդիրները ագիտատորի հետ միասին հաշվեցին, ստացվեց, որ գործարանը այդ մեկ տարվա խնայողությունից լրացուցիչ կունենա տարեկան 72 տոննա մետաղ, որից կարելի կլինի պատրաստել 12 հազար կռածո, որը խոշոր չափով կէժանացնի արտադրանքի ընդհանուր ինքնարժեքը։ Զրույցի ժամանակ պարզաբանվեց նաև այնպիսի հարցեր, որոնք նպաստում են աշխատան-



քը տեղում բարելավելուն։ Ագիտատորի մեկ ուրիշ զրույցի ժամանակ պարզվեց, որ ԶԻՍ—5 ավտոմեքենայի կոնտրշափերի լիսեռի ատամնանիվը բավականին տաշվում է և յուրաքանչյուր դետալից 50—100 գրամ մետաղի կորուստ է առաջանում։ Այս հարցը հասցվեց գործարանի տեխնիկական բաժնին, որը մանրամասն ուսումնասիրելուց հետո գտավ, որ դետալների շտամպների ձևափոխման միջոցով կարելի է զգալի չափով կանխել առաջացած մետաղի կորուստները։ Ներկայումս այդ նորարարությունը կիրառելու միջոցով գործարանը մեծ քանակությամբ մետաղ է խնայում։ Միայն այս դետալից մետաղի խնայողությունը տարեկան կկազմի 3—4 տոննա։

Գործարանում, առաջ չէր իմացվում, թե որ պրոցեսում է դետալը խոտան դարձել։ Իսկ խոտան արտադրանքը զգալի չափով ազդում էր ոչ միայն արտադրական պլանի կատարման, այլև նյութերի ու աշխատավարձի գերածախսի վրա, որը վերջին հաշվով թանկացնում էր արտադրանքի ինքնարժեքը։ № 2 մեխանիկական ցեխի ագիտատոր Կառլեն Կարագյոզյանը իր զրույցներից մեկում բացատրեց ունկնդիրներին խոտանից առաջացած վնասների մասին։ Նա իր զրույցի ժամանակ բանվորներին կոնկրետ թվերով

և փաստերով ցույց տվեց, թե ինչպես մեկ տոկոս արտադրանքի խոտանի դեպքում գործարանը փաստորեն կորցնում է 4500 ռուբլու ավտոպահեստամաս, մեկ տոննա մետաղ և թույլ է տրվում համապատասխան չափով աշխատավարձի գերածախս։ Զրույցը օգնեց գործին։ Ցեխի բանվորները սկսեցին պայքարել բարձրորակ արտադրանքի համար։

Եթե մինչև այդ դետալի մշակման ժամանակ խոտանը խառատային և ֆրեզային մշակումից հասնում էր օրական 10—12 հատի, ապա ներկայումս այդ օպերացիաներից խոտանը կազմում է օրական 1—2 հատ։ Զգալի չափով իջավ դետալների ինքնարժեքը։ Հուլիս, օգոստոս ամիսներին մեկ դետալի ինքնարժեքն էր 13 ռ. 50 կոպեկ, իսկ սեպտեմբերին այն կազմեց 12 ռուբլի։

Ագիտատորները օգնում են նաև օժանդակ նյութերի խնայողության հարցում։ Գործարանի կոնսերվացիայի ցեխի ագիտատոր Բ. Բալասանյանը ագիտացիոն զրույցի ժամանակ բացատրեց թե ինչպես խնայողաբար չի օգտագործվում անտառանյութը, չի օգտագործվում մեծ քանակությամբ տախտակների մնացորդները։ Այս հարցը հետագայում ավելի լուրջ բնույթ կրեց։ Ցեխի արտադրական խորհրդակցությունում պահանջվեց միջոցներ ձեռնարկել անտառանյութի լրիվ օգ-



տագործման կապակցությամբ։ Այդ առաջարկությունը կյանքում կիրառվեց։ Սկսեցին օգտագործել անտառանյութի կտորտանքը, որի արդյունքը եղավ այն, որ վերջին ամիսներին գործարանը խնայեց 120 խորանարդ մետր անտառանյութ և մոտ 1,5 տոննա մեխ։

Արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկ իջեցման գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականությունը։ Գործարանի ագիտատորներն ունկնդիրներին պարզաբանել են աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիների մասին, տեղում ունեցած ներքին ռեզերվների օգտագործման հնարավորությունների մասին։ Այժմ բանվորներին և ծառայողներին հայտնի է, որ յուրաքանչյուր բանվորի օրվա թեկուզ մեկ րոպեի պարապուրդը գործարանին վնաս է բերում 4 կոպեկ, իսկ եթե ամբողջ կոլեկտիվը կորցնի մեկ րոպե, այդպիսով գործարանը կկորցնի 41 ռ. 36 կոպեկ։

Այս տարի հատկապես ուժեղ թափ է ստացել նորարարությունն ու գյուտարարությունը, որը մեծ չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում է արտադրանքի ինքնարժեքը։

Գործարանի արտադրական ցուցանիշների բարձրացմանը մեծ չափով օգնում է ցուցադրական ագիտացիան։ Ցեխերում ու աչքի

ընկնող տեղերում կարելի է հանդիպել գեղարվեստորեն ձևավորված լոզունգներ, ինչպես և կոնկրետ պարտավորություններ, որի համար պայքարում է գործարանի կոլեկտիվը։

Թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար լուրջ աշխատանք են կատարում նաև Ավտոդողերի, Պահածոների գործարանների, Դերմատին-մոմլաթի «Ռուբեդա», Մյասնիկյանի անվան կաշույքի ֆաբրիկաների, Ջեթ-օճառ կոմբինատի ագիտատորները։

---



# ԳԵՐԱԶԱՆՑ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԵՆ ԵԶՐԱՓԱԿՈՒՄ ՏԱՐԻՆ

(Թվեր և փաստեր)

Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողներն անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ 20-րդ համագումարի պատմական որոշումները, գերազանց ցուցանիշներով են եզրափակում 1957 թվականը։ Ահա այդ մասին թվեր ու փաստեր։

✪ Երևանի էլեկտրա-մեխանիկական, № 2 երկաթբետոնյա կոնստրուկցիայի, Ասֆալտբետոնի գործարանների, Մարմարի կոմբինատի, Դպրոցական պիտույքների, № 3 կաշույքի, Երկոշ ֆաբրիկաների ու մի շարք արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները դեռևս նոյեմբերի 1-ին կատարեցին ու գերակատարեցին համախառն արտադրանքի գծով 1957 թվականի պլանը և պլանից դուրս երկրին տվեցին մոտ 88 միլիոն ռուբլու արտադրանք։

✪ Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության էլեկտրամեխանիկական գործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական ծառայողները համախառն արտադրանքի տարեկան առաջադրանքները կատարեցին 8 ամսում և մինչև նոյեմբերի 1-ը պլանից ավելի

թողարկեցին 591.500 ռուբլու էլեկտրական սարքավորումներ։ Նրանք ամեն մի բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելով 40 տոկոսով, պայքարում են մինչև տարվա վերջը երկրին տալ մոտ 700 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

✪ Երևանի բազմաթիվ ձեռնարկություններ արտադրության մեջ արմատավորելով սովետական գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները և արտադրության նորարարների առաջավոր փորձը 1957 թվականի տնտեսական տարին փակում են աչքի ընկնող հաջողություններով։ Օրինակ, Երևանի Ջեթ-օճառ կոմբինատում մաշված սարքավորումների փոխարեն արդեն օգտագործում են ժամանակակից հայրենական կատարելագործված բարձր արտադրողականություն ունեցող սարքավորումներ, լրիվ վերակառուցված է ձեթի գործարանը, մեծ բարեփոխություններ են կատարված կոմբինատի ճարպայուղերի գործարանում, որտեղ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 30 տոկոսով։ Կոմբինատը 11 ամսվա պլանները համախառն արտադրանքի գծով կատարել է 103,2 տոկոսով։ Յուրացվել և թողարկվել են օճառի մի քանի նոր տեսակներ։ Արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու հետ միասին, կոմբինատը պլանից դուրս երկրին կտա 8 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Պահածոների գործարանի կոլեկտիվը 1957 թվականի 10 ամիսների ընթացքում խնայել է մոտ 300 տոննա հումք, 130 հազար կիլովատ էլեկտրաէներգիա։



✪ Երևանի Կաբելի գործարանի կոլեկտիվը անցած 11 ամիսների ընթացքում երկրին տվել է ավելի քան 2,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

✪ Պոլիվինիլացետատ գործարանը միշտ դասվել է ռեսպուբլիկայի առաջավոր գործարանների շարքին։ Գործարանի կոլեկտիվը 1957 թվականի 11 ամսվա պլանը կատարել է 100,8 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ համախառն արտադրանքի թողարկումն ավելացավ 13,5 տոկոսով։ Ընթացիկ տարվա 10 ամիսների ընթացքում խնայվել է 520 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 367 տոննա պայմանական վառելիք և մի շարք այլ հիմնական նյութեր։

✪ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները այս տարվա համախառն արտադրանքի թողարկման 11 ամսվա պլանը կատարել են 103,1 տոկոսով։ Պլանից դուրս երկրին տվել են 103 միլիոն ռուբլու արտադրանք։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արտադրանքի թողարկումն մեծ չափերով ավելացել է։

✪ Ստալինյան շրջանի ձեռնարկությունները ընթացիկ տարվա տասը ամսվա պլանը համախառն արտադրանքի գծով կատարել են 102,5 տոկոսով։ Արտադրանքի թողարկումը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է մոտ 48 միլիոն ռուբլով։

Հայկական ՍՍՌ շինարարության մինիստրության

տեղական շինանյութերի տրեստը 1957 թվականի պլանները կատարել է ժամկետից մեկ ամիս 20 օր շուտ։ Տրեստի կոլեկտիվը պարտավորվել է պլանից դուրս երկրին տալ 2 միլիոն ռուբլու շինանյութ։

✪ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը աչքի ընկնող հաջողությունների է հասել պետական պլանների կատարման և գերակատարման ուղղությամբ։ Այս տարվա 11 ամսվա արտադրական պլանը համախառն արտադրանքի գծով կատարել է 102,9 տոկոսով, գերակատարելով նաև մյուս տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Գործարանը միայն 11 ամսում ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից տնտեսել է 3 միլիոն ռուբլի։

✪ Ավտո-պահեստամասերի գործարանի պարտիական կազմակերպությունը և դիրեկցիան շարունակելով նոր դետալների յուրացումը զգալիորեն ավելացրել են ԳԱԶ—51 և ԶԻԼ—150 ավտոմեքենաների պահեստամասերի թողարկումը։ Դրա շնորհիվ ավտոպահեստամասերի թողարկման քանակը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 12 միլիոն ռուբլով։ Նախկինում գործարանում արտադրվող 30 անուն դետալների փոխարեն այժմ արտադրվում է 49 անուն դետալ։ Գործարանը բացի Սովետական Միության տարբեր ռեսպուբլիկաներից, ավտոպահեստամասեր է ուղարկում նաև Ժողովրդական Դեմոկրատիայի երկրները։

✪ Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրո գործարանում



շահագործման են հանձնել 5.500 քառ. մետր արտադրական տարածություն։ Անցած 11 ամսվա ընթացքում շահագործման են հանձնել նոր կոնվեյեր։ Յուրացրել և մասսայական թողարկման են հանձնել սինխրոնային գեներատորների մոտ 4 տեսակ, ղեկավարման վահանների և շարժման էլեկտրոկայանների մի շարք նոր տիպեր։ Գործարանը 11 ամսվա պլանները համախառն արտադրանքի գծով գերակատարել է։

✪ Ժամացույցի գործարանի կոլեկտիվը անցած 11 ամսում պլանը կատարել է 102,2 տոկոսով ։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արտադրանքի թողարկումը ավելացրել է 24 տոկոսով։ Արտադրության մեջ ներդնելով նոր տեխնիկան և առաջավոր տեխնոլոգիան կոլեկտիվին հաջողվեց զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Գործարանը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ երկրին տվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու արտադրանք։

Արտադրանքի թողարկումն ավելացնելու հետ միասին բանվորների աշխատավարձը բարձրացել է 8,6 տոկոսով։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ 1958 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի առթիվ *(1917—1957)։ ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսները, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 17-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչով— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուն տարին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում 1957 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Սովետական Միության ժողովուրդներին, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Դիմումը, տպագրված «Ս. Հ.»-ի *1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*



ՍՍՌՄ Գերագույն Սովետի 9-րդ սեսիայի նյութերը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի համարներում։*

## *2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՆՈՐԱՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և հայ ժողովրդի վերածնունդը, Հայաստանի ԿՊ Կենտ*կոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի թեզիսները, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1957 թվականի քսաներորդ համարում։*

Սովետական Հայաստանի 37 տարին, *Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահ Ա. Քոչինյանի հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 29-ի համարում։*

Դեպի Հայաստանի Կոմպարտիայի 19-րդ համագումարը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 30-ի առաջնորդողը։*

## *3. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ, 1958 ԹՎԱԿԱՆԻՆ ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔ*

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ—* Ինչպես կազմակերպել մրցությունը, *Երկեր, հատոր 26, էջ 493—506, Հայպետհրատ, 1951։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—* ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի

հաշվետվությունը պարտիայի XX համագումարին. *Հայպետհրատ, 1956։*

Սովետական Միության ժողովուրդներին, *Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Դիմումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Կազմակերպված անցկացնել հանրային հոտի ձմեռումը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 3-ի առաջնորդողը։*

Խնայողության խստագույն ռեժիմ հաստատել արտադրության մեջ, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 1-ի առաջնորդողը։*

*4. ՊԱՅՔԱՐԵՆՔ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ, ՀՈՒՄՔԻ ԵՎ ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱՅԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Աշխատանքի արտադրողականության, արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի և կապիտալ շինարարության հարցերը, *ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվությունը պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956, էջ 76—80։*

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ *Սովետական Միության բոլոր բանվորներին և բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին,*



*տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։*

Տեխնիկական պրոգրեսը արդյունաբերության վերելքի կարևորագույն *պայմանն է, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 15-ի համարում։*

*5. ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԵՎ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Գյուղատնտեսության մեքենայացումը, *ՍՄԿՊ XX համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 94—97։*

Լիովին կատարել ստանձնած պարտավորությունները, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 23-ի առաջնորդողը։*

Այժմվանից նախապատրաստվել գարնանացանին, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 12-ի առաջնորդողը։*

*6. ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԼԱՅՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ի՞նչ է տալիս 100 հեկտարը, *Հոկտեմբերյանի շրջանի Տանձուտ գյուղի Էնգելսի անվան կոլտնտեսության նախագահ Խ. Պողոսյանի հոդվածը, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի իններորդ համարում։*

Հանրային անասնաբուծության վերելքի համար,

Կալինինոյի շրջանի Պրիվոլնոյե գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Ս. Իվլևի հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 4-ի համարում։

## 7. ԱՇԽԱՐՀԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուն տարին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում, 1957 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Խաղաղության Մանիֆեստ, տպագրված «Ս. Հ.»-ի *1957 թվականի նոյեմբերի 24-ի համարում։*

Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների 1957 թվականի նոյեմբերի 14—16-ը Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցության Դեկլարացիան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 26-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին, *տպագրված «Պրավդա»-ի 1957 թվականի դեկտեմբերի 12-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը *Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի ֆեդերալ կանցլեր Կ. Ադենաուերին, տպագրված «Պրավդա»-ի 1957 թվականի դեկտեմբերի 12-ի համարում։*

---

# ՑԱՆԿ

## «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ 1957 ԹՎԱԿԱՆԻՆ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ



ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ
(Թվեր և փաստեր)

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ







## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

## СОДЕРЖАНИЕ

Стр.



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 24** **1957 г.**


*ՎՖ 11161* *Պատվեր 900* *Տիրաժ 8500*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*